## ՄՇԱԿՈՅԹԻ ՏՈՒՆ

Շաւիլի գաղութին կողմէ Շ. Մխաքեան Սրահին նուիրուած 22·300 ֆր. (յայտարարուած Ա. էջ Փետր. 9) գումարին նուիրատուներու ցանկը ստորեւ.

Գնէլ Կէօշկարեան 1500 ֆր., Գ. Պօղոսեան, Գ. Կիւլեան, Ա. Գոթանեան, Հայկազ Շմաւոնեան, Անանյեան, Գարօղլանեան, Վահէ Մարտիրոսեան, Սարգիս Մկրտիչեան, Թորոս Սարեան, Ֆիլիպ Յովհաննէսեան, Օն. Տէմիրճեան, Նազար Նազարեան, Մարտիրոս Օհանեան, Արմենակ Պետեան, Տաճատ Տողրամաճեան, Պաղտիկ Քիւլչէեան հազարական ֆրանք: Մովսէս Տէմիրճեան, Օր. Շաքէ Էմիրչէեան, Նուպար Սարաֆեան, Յար. Պօղոսեան, Համբ. Ֆընդըճեան, Խորէն Մինասեան, Հարպիկ Կիւլեան, Յակ. Մեծատուրեան, Յակ. Արէլեան 500ական ֆրանք: Դաւիթ Տէր Գալուստեան 300 ֆր.:

Տիկին Թ. Պօղոսեան եւ Պ. Մ. Սարգիսեան 500ական նուիրելով գումարը կ'ըլլայ 23·300: (Յաջորդով Ալֆորվիլի ցանկը):

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՍԷՆ-ԺԵՐՈՄ.— Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէն խորապէս կը ցաւակցի ընկ. Ս. Յարութիւնեանի որդւոյն Կարպիսի անցուցած աշխատանքի արկածին եւ սրտանց կը մաղթէ լաւագոյն եւ շուտափոյթ ապաքինում:

×

Հ. Յ. Դ. Մարսէյլի «Դրօ» խումբի ընկերները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն ընկեր Սահակ Յարութիւնեանի, Տիկին Արմաւենիին եւ Օր. Ալիս Յարութիւնեանի, իրենց զաւկին եւ եղբօր՝ Կարպիս Յարութիւնեանի պատահած ցաւալի արկածին առթիւ եւ արագ ապաքինում կը մաղթեն:

×

Մարսէյլի Հայ Արենոյշներու խմբապետական խորհուրդը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Սահակ Յարութիւնեաններուն եւ խմբապետուհի Ալիս Յարութիւնեանին, իրենց զաւկին եւ եղմօր Կարպիսին պատահած արկածին առթիւ եւ արագ ապաքինում կը մաղթեն:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԻ տարեկան պարահանդէսը տեղի կ'ունենայ Ապրիլ 28ին, Իսիի Թաղապետական սրահին մէջ:

Մանրամասնութիւնները յաջորդով:



Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պարոն Կիրիճեան Հարեան, Տէր եւ Տիկին Արթին Ղազարոսեան, Ժորժ Հարեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին, իրենց կնոջ եւ մօր՝

ՄՐԲՈՒՀԻ ՀԱՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

●

Տիկին Սիրանոյշ Գ. Զաքրեան կը ծանուցանէ թէ այս կիրակի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իր ամուսնոյն ԳէՈՐԳ ԶԱՔԸՐԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ:

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

## ՖՐ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԸ

Իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ այն բոլոր հայրենակիցներուն որոնք սիրայօժար մասնակցեցան 1956ի հանգանակութեան ձեռնարկին: Մասնաւորաբար Պ. Պ. Արսէն Տէր Զաքարեանի, Մարիկեանի, Փանոսեանի, Իսպիրեանի որոնք նուիրած էին տաբատներ, փուլովըրներ եւ կօշիկներ, կարօտ երախաներու բաժնուելու համար: Իսկ Տէր եւ Տիկին Պարսամ Յակոբեան 1000 ֆր. նուիրած էին Ս. Ծնունդի առթիւ:

× Վարչութիւնը իր ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Հազարեանի, իրենց հօրեղբօր աղջկան Տիկին Արաքսի Քէօսէեանի մահուան առթիւ.

ՇԱՒԻԼԻ եկեղեցաշէն յանձնախումբը Պարոն Զիլինկիրեանէ (Սէն-Քլու) ստացած է 30·000 ֆրանք, որուն համար իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ:

## ՎԱՐԴԱՆԱՆՑԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Փարիզի Հայ. Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը նկատի ունենալով Վարդանանց մեծ եւ փառաւոր ճակատամարտի կրօնական եւ ազգ. տօնի պատմական հանգամանքը, այս տարի եւս պատշաճ հանդիսաւորութեամբ պիտի տօնակատարէ 28 Փետր. հինգշաբթի օր ժամը 9,45ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցիին մէջ:

Հրաւիրուած է Փարիզի եւ շրջակայքի հայերէնի դասընթացքներու աշակերտութիւնը. պիտի մատուցուի մասնաւոր Ս. պատարագ: Արարողութիւններուն պիտի նախագահէ Հայր. Պատուիրակ Գեր. Տ. Սերովբէ եպիսկ. Մանուկեան:

Յետ պատարագի դպրաց դասը պիտի երգէ յաւուր պատշաճի երգեր եւ պիտի ըլլան արտասանութիւններ:

Կը խնդրուի մեր բոլոր հայրենակիցներէն որ ներկայ ըլլան, յարգելու համար սրբոց Վարդանանց յիշատակը:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Հայաստանէն Մուշի Առախ գիւղացի Առաքել Գասպարեան Մարսէյլի մէջ կը փնտռէ Լեւոն Գասպարեան: × Պէյրութէն Հայաստան հայրենադարձ Տիկ. Ռոզա Մաքինխաեան կը փնտռէ իր զաւակները՝ Հայազատ եւ Յովհաննէս, որոնք կը կարծուին Մատակասքար գտնուիլ: × Եթովպիայէն Կարպիս Թէրզեանէ նամակ ունի Տօքթ. Խորէն Շինիքճեան: Գրել կամ դիմել Մայր Եկեղեցի, 339 Ավընիւ տիւ Փրատօ:

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ

Գեղարուեստական ցերեկոյթ Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ, Կիրակի 12 Մայիս ժամը 14ին:

Մանրամասնութիւնները մօտ օրէն:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ «Արամ» ենթակոմիտէի ընկ. ընդհ. ժողովը այս ուրբաթ, երեկոյեան ժամը 9ին սովորական հաւաքատեղին: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՊԱՆԵԷՕ-ԲԱՆԱՆԻ Կապոյտ Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ ժամը 5էն 8, Տիկ. Գարաօղլանեանի բնակարանը:

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ժողովը այս շաբաթ իրիկուն, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրացի վարչութիւնը իր բոլոր անդամ եւ անդամուհիները ընդհանուր ժողովի կը հրաւիրէ այս կիրակի օր, ժամը 3ին Խրիմեան դպրոցը: Բոլոր անդամ եւ անդամուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Եւրոպայի Կեդրոնական Կոմիտէն ընկերական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ փարիզեան շրջանի բոլոր ընկերները այս հինգշաբթի, 21 փետր. երեկոյ ժամը 9ին Սոսիէթէ Սավանթի Տէ սրահին մէջ:

Կարեւոր զեկոյց կուտայ Արեւմտեան նոր ժամանած ԸՆԿ. ԿՈՊԵՌՆԻԿ ԹԱՆՏՐՃԵԱՆ

×

Յետաձգուած է Փետր. 18ի ոգեկոչումը:

## ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ՄԱՐՍԷՅԼ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիայի Շրջ. Վարչութեան կողմէ:

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ:

Շաբաթ, 23 փետրուար երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, Սալոն Ռուա Րընէի մէջ, ռիւ տը լ'Արպրը:

Մասնակցութեամբ ՐԸՆԷ ՏԱՆԻԻ նուագախումբին:

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ — ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

24 Փետր. ժամը ճիշդ 15,30ին, կը ներկայացուին 1) Անիծեալ ասպետը (պատմական դրամ՝ արար), 2) Լա շամպրը նիւմէրօ 13 (կատակերգութիւն մէկ արար եւ 3) Զարշըլը Արթին աղա (կատակերգութիւն 3 արար):

